

# ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿԻ ԱՂԲՅՈՒՐԸ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ծաղկաձորում կա մի ճամբար՝
Անունով ճիշտ լեգենդի,
Որ բխում է աղբյուր մի պաղ
Հավերժական կարոտի։

Դա աղբյուրն է բանաստեղծի,
Մանուկների ձեռքի գործ,
Դու կկարդաս՝ «Լույս եղիցի...»
Քարի վրա ոսկերոց...

Դա հենց աղբյուրն է ճամբարի,
«Պարույր Սևակ» անունով,
Քեզ պոետն է ժպտում բարի,
Իր երգերի անհունով։

Ծպտում է նա կարկաչներից
Լեռնային պաղ գետակի,
Սարալանջի կակաչներից,
Գմբեթներից հին վանքի։

Դու լսում ես նրան կարծես՝
Կաղնիների խշշոցից,
Կարծես պատգամ է կարդում քեզ
Իր վերջին երգ-երգոցից.

— Մաքուր պահեք անտառը այս,
Այս գետակը զրնգուն,
Որ միշտ լինի լույս ու երազ
Ձեր աչքերում, ձեր հոգում։



# ՀՈՐԹԸ ԿՈՐԵԼ ԷՐ

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

— Ես քեզ չասացի՞, ուշադի՛ր նայիր։— Կարոն մեծավարի էր հանդիմանում։ Արտակը, չհամարձակվելով հայացքը բարձրացնել, խաղում էր հողոտ մատների հետ։— Հիմա որտեղի՞ց գտնենք...

Արտակը մեղավոր թոթվեց ուսերն ու ձեռքի երեսով սրբեց քիթը։

— Ի՞նչ անենք,— նրան նայելով, ինքն իրեն հարցրեց Կարոն։— Դե լա՛վ, դու գնա տո՛ւն, իսկ ես տեսնեմ որտեղ կարող եմ գտնել։

Փոքրի աչքերում արցունք հայտնվեց, և նա ավելի կախեց գլուխը։ Կարոն շրջվեց նրանից ու քայլեց անտառի կողմը։ Արագ-արագ գնում էր ու մտածում, որ շուտով կմթնի։ Սկսեց բարձրաձայն սուլել։ Հետո թիկունքից ոտնաձայն լսեց ու ետ նայեց։ Արտակն էր։

— Այդ ո՞ւր,— բարկացավ Կարոն։— Քեզ ասացի՝ տո՛ւն գնա։

— Չեմ ուզում,— լացակումեց փոքրը։— Գալիս եմ քեզ հետ հորթին փնտրելու։

Մեծը մի պահ մտածեց, ապա թափ տվեց ձեռքը.

— Լավ, գնանք... Միայն թե արագ։

Անտառը կիսամութ էր, փոքրն աշխատում էր ետ չմնալ եղբորից։

— Այն կողմում մի բացատ կա,— ասաց Կարոն, ձեռքն առաջ պարզելով։— Կարող է, այնտեղ է գնացել։

— Մե՞ծ բացատ է։

— Չէ՛, այնքան էլ մեծ չէ,— ասաց մեծը։— Ես մի երկու անգամ եղել եմ այնտեղ։ Մի անգամ էլ դասարանով գնացինք։

Փոքրը նախանձով նայեց եղբորը։

— Դասարանով լավ է, չէ՞,— ասաց նա։

— Ի՞նչ տարբերություն,— պատասխանեց մեծը։

— Մյուս տարի, երբ ես դպրոց գնամ, մեզ էլ դասարանով կբերե՞ն այդ բացատը։— Փոքրիկը ասաց ու կողքանց նայեց եղբորը։

Բացատում ավելի լույս էր, իսկ հորթը չկար։ Արտակը նորից մեղավոր նայեց Կարոյին, ասես երկրորդ անգամ կորավ հորթը։

— Չկա,— ասաց նա՝ նայելով փոքրիկ բացատը շրջապատող հսկա ծառերի տերևներին, կարծես հորթը կարող էր բարձրանալ ու թաքնվել այնտեղ։

— Ուզո՞ւմ ես, գնանք աղբյուրի մոտ էլ նայենք,— հարցրեց մեծը։— Շատ հեռու չէ։ Կարող է, գնացել է ջուր խմելու...

— Ինքը գիտե՞ր աղբյուրի տեղը,— կասկածեց Արտակը։

— Կենդանիները ջրի տեղն իմանում են,— բացատրեց մեծը։— Երկի հոտն են առնում...

— Ջուրը հոտ ունի՞...

— Կունենա,— կասկածանքով ասաց մեծը,— մենք չենք զգում, բայց կունենա։

Չորս կողմը խոշոր, հաստաբուն կաղնիներ էին։ Նրանց սաղարթախիտ ճյուղերը վերևում դիպչում էին իրար։ Եվ նրանք միահամուռ ուժերով ետ էին մղում արեգակի թույլացած ճառագայթները, անսասան պահպանելով կիսախոնավ ու զով։ Տղաների ոտքերի տակ շարունակ փշրվում էին չորացած մանր ճյուղերն ու անցյալ տարիների հողագույն դարձած տերևները։ Տերևների տակից խոտի հատուկենտ ընձյուղներ էին բարձրացել։

Աղբյուրը զուլալ ջրով լիքն էր։ Չէր զգացվում, թե ինչպես է այն բխում մանր խճաքարով ու սևացած ճյուղերով ծածկված հատակից։ Իսկ փոքրիկ առվակն անընդհատ կարկաչով փորձում էր դատարկել աղբյուրի ջրափոսն ու չէր կարողանում։

Փոքրը ափերը բուռ արած՝ լցրեց ջրով ու մոտեցրեց բերանին։

— Այստեղից այդպես չեն խմում ջուրը,— ասաց մեծը,— նայի՛ր, սովորի՛ր։

Նա ծնկեց ջրափոսի դիմաց և, երկու ձեռքով հողին հենվելով, իջեցրեց գլուխը։ Նրա շուրթերը հպվեցին ջրին, և նա սկսեց խմել։

Արտակը նրա նման չոքեց, որ խմի, նրա քթով էլ ջուր ներս գնաց և նա սկսեց հազալ։

— Այսպես ավելի համով էր։— Խմելուց հետո նա սրբեց թրջված քիթն ու առվակի ջրով լվաց ձեռքերը։

Վերևից թեթև խշշոց լսվեց։ Նրանք վերև նայեցին։

— Հորթո՛ւկը,— ուրախացած բացականչեց փոքրը:— Մեր հորթն է: Բիժո՛, բիժո՛...

Թփերի ետևից դեղնակարմրավուն կենդանու մեջք երևաց:

— Սո՛ւս,— եղբորն ընդհատեց մեծը:— Եղնիկ է: Եկել է ջուր խմելու:

Կենդանին միլը ձգեց թփի միջով և նրանց տեսնելով, արագ վազքով անցավ ձորն ու թաքնվեց մյուս կողմում: Փոքրը շարունակում էր նայել նրա անցած ճամփին:

— Ինչո՞ւ փախավ...— հարցրեց նա:

— Վախեցավ մեզանից:

— Էլ չի գալո՞ւ...

— Կգա,— ասաց մեծը:— Ծարավ հո չի՞ մնա: Մեր գնալուց հետո կգա:

— Ես ոչ մի անգամ եղնիկ չէի տեսել,— ասաց փոքրը:— Սիրուն էր, չէ՞: Ինչ լա՜վ էր, որ այստեղ էինք...

— Գնանք,— ասաց Կարոն,— արդեն մթնում է:

— Հորթուկին չգտանք,— նորից հիշելով՝ տխրեց փոքրը:— Որտե՞ղ կլինի...

— Եսի՞մ...

Մթնում էր: Տերևների միջով երևացող երկինքն այլևս այնպիսի պայծառ կապույտ չէր: Չորս կողմում կարծես ուժգնացել էր թռչունների ճռվողյունը:

— Տո՛ւր ձեռքդ,— ասաց մեծը:

Փոքրը հնազանդորեն բռնեց նրա ձեռքից:

— Երբ ես էլ դասարան ունենամ,— ասաց նա,— կգամ այս աղբյուրի մոտ կթաքնվեմ ու կնայեմ, թե ինչպես են եղնիկները գալիս ջուր խմում: Այնպես կթաքնվեմ, որ նրանք չտեսնեն ինձ...

— Միևնույն է, կզգան,— ասաց Կարոն:— Նրանք նույնիսկ մարդու շնչառությունն են զգում:

— Ես շունչս կպահեմ,— ասաց փոքրը:— Շունչս պահած կնստեմ ու կնայեմ... Դու էլի՞ էիր եղնիկ տեսել:

— Մի տասն անգամ:

— Երանի քեզ,— ծոր տվեց փոքրը:

Երբ բացատ եկան, համարյա չլուսացավ: Երկինքն արդեն գորշ էր, և չորս կողմի ծառերը միաձույլ մութ պատի էին նմանվում: Կարծես հորի միջից նայելիս լինեին այդ գորշ երկնակտորին:

— Տանը ջղայնանալու են, որ այսքան ուշ ենք վերադառնում,— հառաչեց մեծը:

— Հորթուկի համար էլ,— հոգոց քաշեց փոքրը:— Բայց ես չէի ուզում, որ նա կորչի:

— Չէիր ուզում՝ թող լավ հսկեիր...

— Մյուս անգամ ես աչքս չեմ կտրի նրանից,— խոստացավ փոքրը:

— Եթե գտնենք,— ասաց մեծը:

— Չեմ թողնի, որ մի քայլ հեռանա ինձանից:

— Պոչից բռնած ման կգաս:

— Հա՛...

Մութը շատ արագ էր խտանում, և ավելի հաճախ էին նրանց ոտքերի տակ ճայթյունով փշրվում չորացած ճյուղերը: Ծառերի կատարներին կամաց սվսվալով խաղում էր երեկոյան քամին, որ անտառի գաղտնիքները դաշտ էր տանում:

Կարոն ամուր բռնել էր եղբոր ձեռքն ու մթնում առաջնորդում էր նրան:

— Մի քիչ վախենալի է,— շշուկով խոստովանեց փոքրը:— Դու չե՞ս վախենում:

— Չէ՛, վախենալու ի՞նչ կա,— ասաց Կարոն: Նա բարձրաձայն սուլեց:— Ուզում ե՞ս միասին երգենք:

Կարոն սկսեց բարձր ձայնով երգել: Նրա երգի ձայնը խլացնում էր մյուս աղմուկները, միայն նրանց ոտքերի մոտից վախեցած ճիչով երբեմն ինչ-որ թռչուններ էին դուրս թռչում: Արտակը քայլում էր եղբոր ետևից ու մտածում, որ դպրոցական դառնալուց հետո ինքն էլ կսովորի նրա իմացած բոլոր երգերը:

Ծառերի արանքով լույսեր երևացին ներքևում:

— Գյուղ ենք հասնում,— թեթևացած ասաց մեծը:— Լույսերը տեսնում ե՞ս...

— Հը՛:— Արտակը հառաչեց.— Տանը կջղայնանան:

Անտառից դուրս գալով, նրանք բլրալանջն ի վար վազեցին դեպի գյուղ: Երկինքը վաղուց արդեն ծածկված էր անհամար աստղերով:

— Համա՛ թե ծեծ եք ուտելու,— նրանց տեսնելով, չարախնդաց հարևանի տղան:— Չերոնք, քանի ժամ է, ձեզ են փնտրում...

— Քո ի՞նչ գործն է,— վիրավորված ասաց մեծը:— Դու էլ ամեն օր ես ծեծ ուտում:

— Մենք եղնիկ ենք տեսել, բա՛...— ասաց փոքրը:— Դե գնա՛...

— Պա՜հ, մի մե՜ծ բան է,— նախանձից չհավատալով՝ ասաց հարևանի տղան: Խաբում ես...

Բակում մոլոր կանգնել էր կորած հորթը: Պատըշգամբի էլեկտրական լամպի լույսն ընկել էր նրա վրա, և նա իր մեծ աչքերով պարմացած նայում էր տղաներին:

— Վա՜յ, հորթո՛ւկ ջան:— Փոքրն ուրախացած բակ վազեց ու գրկեց նրա վիզը:— Բիժո՛ ջան, որտե՞ղ էիր... Մենք եղնիկ տեսանք...

— Հա՛, եկել են,— լսվեց հարևանի տղայի ձայնը, և նրանք հասկացան, որ հայրն ու մայրն են գալիս:— Հենց նոր եկան...

Բակի դուռը բացվեց: Հայրն ու մայրը ներս մըտան: Փոքրը վազեց նրանց ընդառաջ ու կանչեց.

— Մենք եղնի՜կ ենք տեսել... անտառի աղբյուրից էլ ջուր խմեցինք... Ես կորցրել էի հորթուկին...

Հայրը գրկեց նրան ու համբուրեց:

Եվ նրանք չորսով բարձրացան աստիճաններով, իսկ հորթը պարմացած նայում էր նրանց ետևից...

# ՇԵՓՈՐԱՀԱՐ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Հնչում է գիլ մեր ականջում
Արձագանքը ձայնիդ վարար,
Մեզ բնության գիրկն ես կանչում,
Շեփորահա՛ր, շեփորահա՛ր:

Հոգնածությունն ես մեր ցրում
Դու շեփորով մայրամուտին,
Աստղերի տակ լռում ես դու
Եվ սպասում առավոտին:

Ու թվում է մեր ճամբարի
Առավոտը՝ ջինջ արևով,
Միշտ աշխարհ է գալիս բարի
Քո շեփորի հրավերով:

# ՄԱՆՈՒՇՆ ՈՒ ՄԱՐԴԱԿԵՐԸ

(Հեքիաթ)

ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Մեծ անտառի մոտ, իր փոքրիկ տնակում ապրում էր աղքատ մի փայտահատ: Ամեն օր վաղ առավոտյան փայտահատը գնում էր անտառ, կտրում էր չորացած ճյուղերն ու մացառները և շալակած տանում էր շուկա՝ վաճառելու: Նրա կինը ցերեկները մոտակա գյուղում հաց էր թխում և երեկոյան իր բաժին երկու հացն առած՝ վերադառնում էր տուն: Իսկ աղջիկը, ուշիմ ու չարաճճի Մանուշը, առավոտը վեր էր կենում, տունը հավաքում, հավերին կուտ էր տալիս ու երբ գյուղի երեխաները գնում էին անտառ՝ մորի ու հաղարջ հավաքելու, վերցնում էր իր կամբյուղն ու միանում նրանց: Երեկոյան բոլորը տուն էին վերադառնում ու աղքատ փայտահատի տնակում իսկական խրախճանք էր լինում: Փայտահատը շուկայում վաճառած փայտի գնով ուտելիք էր առնում, հացթուխը բաց էր անում իր բերած հոտավետ լավաշները, իսկ վերջում բոլորը միասին անուշ էին անում Մանուշի բերած մորին ու հաղարջը: Աղքատ մարդիկ էին, բայց երբեք չէին գանգատվում իրենց բախտից, քանի որ տանը համաձայնություն կար ու սեր:

Մի օր էլ Մանուշը սովորականի նման գյուղի երեխաների հետ գնում է մորու: Մորի ու հաղարջ հավաքելով նա խորանում է անտառում և մեկ էլ ետ է նայում, տեսնում, որ ընկերները չկան: Այս կողմ է վազում, այն կողմ, այս ծառի ետևն է նայում, այն ծառի, բայց, ընկերներն ասես գետնի տակ անցած լինեին, չկային ու չկային: Սկսում է ձայն տալ.

— Աղջկե՛րք, է-հե՜յ, աղջկե՛րք...

Պատասխան չի լինում: Ստիպված մի արահետ է բռնում ու այդ արահետով գնում է, հույս ունենալով, թե դուրս կգա անտառից: Քանի գնում, այնքան ավելի է խորանում անտառում ու սիրտը ահ է ընկնում: Հակառակի պես ոչ ոք չի հանդիպում՝ ո՛չ փայտահատ, ո՛չ ջախ հավաքող կանանցից մեկնումեկը: Միայն բվի կռինչ ու աղվեսի կաղկանձ է լսում:

Այսպես շատ է գնում, թե քիչ, դուրս է գալիս մի բացատ: Բացատում մի խրճիթ է լինում, խրճիթի մոտ՝ ջրհոր, իսկ ջրհորի մոտ մի մարդ է կանգնած լինում: Շատ է ուրախանում Մանուշը: Ամեն ինչ մոռացած, նա կամբյուղը մի կողմ է նետում ու վազում դեպի մարդը:

Դու մի ասի, էդ խրճիթը մարդակերի տունն է ու ջրհորի մոտ կանգնածն էլ հենց ինքը՝ մարդակերն է:

— Արի՛, արի՛, աղջի՛կս,— քթի տակ ասում է մարդակերը,— լավ ժամանակին ես եկել, ես դեռ չեմ նախաճաշել... արի՛, մոտեցի՛ր:

Բայց աղջիկը չի էլ լսում Մարդակերի խոսքերը: «Քեռի՛» կանչելով վազում ու փաթաթվում է նրա ոտքերին:

— Քեռի՛, ես մոլորվել եմ անտառում, ինձ մեր տուն կտանե՞ս: Հա՞, քեռի՛, ես փայտահատի աղջիկն եմ, ինձ մեր տո՛ւն տար:

— Էդ ի՞նչ է, դու ինձ չտեսա՞ր, անպիտա՛ն աղջիկ, հապա մի լա՛վ նայիր,— ասում է մարդակերն ու իր այլանդակ ատամները կրճտացնում: Իսկ աղջիկը իրենն է շարունակում.

— Անտառում ընկերներիս կորցրել եմ... տան ճամփան էլ եմ կորցրել, մոլորվել եմ, քեռի՛, ինձ մեր տո՛ւն տար:

— Չէ՛ մի... հիմար չեմ: Ես քեզ հիմա ուտելու եմ: Լավ էլ ժամանակին ես եկել:

Էստեղ Մանուշն սկսում է ծիծաղել, այնպես է ծիծաղում, որ մարդակերը մնում է զարմացած:



— Մի հարցնող լինի՝ ինչո՞ւ ես ծիծաղում: Չասացի՞, որ քեզ ուտելու եմ:

— Չե՛ս ուտի, չե՛ս ուտի,— ծիծաղելով ասում է Մանուշը ու տեղում թռչկոտում:

— Ինչպե՞ս թե չես ուտի... օրինակ՝ ինչո՞ւ: Ա՛յ, հիմա կտեսնես,— ասում է մարդակերն ու աղջկան քարշ է տալիս դեպի խրճիթը:

Խրճիթի ներսում ամեն ինչ այնպես է, ինչպես մարդակերի տանը պիտի լիներ: Հատակին ոսկորներ են թափթփված, ջրով լի մեծ կաթսա է դրված օջախին, պատերից զանազան մեծության շամփուրներ են կախված:

— Վա՛յ, էս ինչքան շատ ոսկորներ կա՜ն,— շուրջը նայելով ասում է Մանուշը:

— Ահա՛, հիմի գլխի՞ ընկար... այս բոլորը քեզ նմանների ոսկորներն են: Չէ՛, սրանք մեծ մարդիկ են եղել, քեզ նման մատղաշների ոսկորն էլ հետն եմ ուտում՝ կը՛րճ, կը՛րճ...— Լեզուն ծլպացնելով՝ ասում է մարդակերը ու հետո մի շամփուր վերցնելով, ավելացնում է.— Ո՛չ, շա՜տ համով եք դուք՝ մատղաշները: Հիմա քեզ կքաշեմ այս շամփուրի վրա, կխորովեմ ու կուտեմ...

Այստեղ Մանուշն ավելի ուժգին է ծիծաղում.

— Վա՛յ, քեռի՛, ի՜նչ հանաքչին ես...

— Չէ՛, խորոված միս ես այրուցք եմ ունենում,— միտքը փոխում է մարդակերը:— Ավելի լավ է քեզ խաշեմ էս կաթսայի մեջ՝ էնպես ուտեմ:

Այս խոսքերի հետ նա սկըսում է չոր փայտ դնել կրակին, օջախը թեժացնել:

Աղջիկը ծիծաղելով մոտենում է օջախին ու ինքն էլ է փայտ դնում կրակին:

— Այդ ի՞նչ ես անում,— զարմացած հարցնում է մարդակերը:

— Չե՞ս տեսնում, փայտ եմ դնում կրակին, կրակն եմ թեժացնում:

— Ինչի՞դ է պետք, ինչի՞ համար ախր:

— Որ ջուրը շուտ տաքանա,— ծիծաղելով պատասխանում է աղջիկը:

— Ջուրը շուտ տաքանա, որ քեզ շո՞ւտ ուտեմ:

— Է՜, հերիք կատակ անես, քեռի՛, ավելի լավ է փայտ ջարդես: Չե՞ս տեսնում փայտը վերջանում է:

Մարդակերը բերանը բաց նստում է սնդուկի վրա և ապշած նայում է աղջկան, իսկ Մանուշը ծիծաղում է ու ծիծաղում: Նրա զնգուն ծիծաղը դուրս է գալիս մարդակերի խրճիթից ու արձագանքում անտառով մեկ: Անտառի գազաններն ու թռչունները մարդակերի խրճիթից ծիծաղի ձայն լսելով, զարմացած իրար են նայում ու անխոս մոտենում խրճիթին: Շատ չանցած խրճիթը շրջապատված էր հետաքրքրասեր գազաններով ու թռչուններով: Իհարկե, նրանք պատշաճ հեռավորության վրա էին պահում իրենց, թաքնվում էին ծառերի ետևում, քանի որ վախենում էին մարդակերից: Չէ՞ որ մարդակերների ձեռքը երբ մարդ չի ընկնում, ամեն ինչ էլ ուտում են:

— Ինչո՞ւ շշկլվեցիր, վե՛ր կաց փայտ ջարդիր, վե՛ր կաց, ծույլի՜կ,— ասում է Մանուշն ու իր փոքրիկ թաթիկներով հրում մարդակերին:

— Գիտե՞ս ինչ, երե՛ս առած աղջիկ, միտքս փոխեցի... ես քեզ ողջակի հում-հում կուտեմ, փայտի կարիք չկա:

— Չե՛ս ուտի, չե՛ս ուտի,— ծափ տալով ու թռչկոտելով՝ ասում է Մանուշը:

— Ինչպե՞ս է, որ չեմ ուտի, հիմա՛ր աղջիկ, ա՛յ, այսպես կվերցնեմ ու կուտեմ:— Ասում է մարդակերն ու աղջկան բռնում բարձրացնում է գլխից վեր, լայն երախը բացում, բայց Մանուշը ավելի ուժգին է ծիծաղում ու կարծես նրա զուլալ ծիծաղից մարդակերի

թևերը թուլանում են: Նա պգուշ իջեցնում է աղջկան ու գոռում է.

— Շուտ կորի՛ր այստեղից, անպի՛տք աղջիկ, գը՛նա՛, գնա՛...

Աղջիկը խռովկան նստում է մնդուկին:

— Ես քեզ չեմ սիրի, որ դուրս ես անում,— փնթփնթում է նա:

— Կորի՛ր, կորի՛ր, այստեղից, քո ծիծաղը չի թողնում, որ քեզ ուտեմ, գնա՛, կորի՛ր:

— Ախր քանի՞ անգամ ասեմ, ա՛յ դմնդալոչ,— ծիծաղելով ասում է աղջիկը,— ես ճանապարհը չգիտեմ... Ինչպե՞ս գնամ, որ ճանապարհը չգիտեմ, հը՞...

Մարդակերը զղախտությունից քիչ է մնում լաց լինի.

— Լսի՛ր, աղջի՛կ, գնա՛ այստեղից, ես դու չար չե՞ս: Ես քեզ չեմ կարողանում ուտել:

— Ես ճանապարհը չգիտեմ, հասկացի՛ր:

— Լավ, ես քեզ դուրս կհանեմ անտառից, միայն թե չքվի՛ր:

Մարդակերը դուրս է գալիս խրճիթից ու ձայն է տալիս մնդուկի վրա նստած Մանուշին.

— Դո՛ւրս արի, շո՛ւտ:

Եվ ահա մարդակերը փնչալով ու ծառերի ճյուղերը կոտրատելով, կատաղած գնում է առջևից, կարծես թե ուզում է ազատվել աղջկա ծիծաղից, իսկ աղջիկը մորի հավաքելով ու անհոգ երգելով գնում է նրա ետևից: Գնում է ու մտածում. հարկավոր է պամբյուղը լցնել, թե չէ երեկոյան հայրիկն ու մայրիկը որ տուն դառնան, ինչպե՞ս կլինի, որ մորի չունենան ուտելու:

— Ա՛յ քեռի,— գոռում է նա մարդակերի վրա,— դու բոլորովին բան չես տեսնում: Ինչո՞ւ ես այս լավլավ մորիները տրորում:

Մարդակերն ավելի է արագացնում քայլերը և ետ էլ չի նայում: Այսպես նրանք հասնում են անտառի եզրին: Հեռվում երևում է փարտահատի տնակը:

— Հրե՜ն ձեր տունը,— գոռում է մարդակերը,— չքվի՛ր, շո՛ւտ:

Աղջիկը թռչկոտելով վազում է տան կողմը, բայց ճանապարհի կեսից մի բան հիշելով ետ է դառնում: Նա տերևիկից մի ծաղկեփունջ է հավաքում ու մոտենալով մարդակերին, ծաղիկները մեկնում է նրան:

— Ահա՛, այս էլ իմ կողմից քեզ, քեռի՛, շնորհակալությո՛ւն...— և երգելով վազում է դեպի իրենց խրճիթը:

Իսկ մարդակերը հենված մի մեծ կաղնու, դեռ երկար նայում է հեռացող աղջկան ու ինքն իրեն ասում.

— Ես ի՞նչ էր...երա՞զ էր, թե՞ չար կատակ: Ես ինչո՞ւ չկերա այդ անպիտան աղջկան, հը՞... ինչո՞ւ...

Հեռվից դեռ լսվում էր աղջկա զուլալ, կնգուն ծիծաղը:

# ՎԱԽԿՈՏԸ

ՖԱՐԻԶԱ ՈՒՆԳԱՐՍԻՆՈՎԱ

(ղազախ բանաստեղծուհի)

Գյուղ է գալիս մեծ քաղաքից
Դպրոցական Հայդարը,
Ընդառաջ են նրան գալիս
Սև հորթուկն ու չալ գառը:
— Օգնե՛ք, օգնե՛ք,— լալիս է նա,—
Բռնե՛ք, որ ինձ չկծեն,
Մոտենում են, հասե՜ք, վա՜յ, վա՜յ,
Պիտի հիմա հարվածեն:—
Բղավում է, ճչում, լալիս,
Մազլցում է նա ծառը,
Տուն է մտնում, դուրս չի գալիս,
Շատ վախկոտն է Հայդարը:
Մկկոցը փոքրիկ այծի
Գոմռոց է նա կարծում,
Եվ ասում է.— Մայրի՜կ, լսի՛ր,
Գամփռներ կան փողոցում:—
Ես ասում եմ.— Փողո՛ց արի,
Մի՛ վախենա, ա՛յ Հայդար,
Սա մի գյուղ է բնակելի,
Ոչ թե վայրի մի անտառ:

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ





*Տպագրության է պատրաստվում Զորի Բալայանի «Ճերմակ Մարաթոն» խորագրով գիրքը, որտեղ հեղինակը պատմում է Մայրագույն Հյուսիսի փոքր ժողովուրդների կենցաղի ու սովորությունների, աշխարհագրական անունների ծագման մասին։ Պատմում է նաև հնարնակներից լսած լեգենդներն ու առասպելները։*

*Մնորև կարդացեք «Ճերմակ Մարաթոն» գրքից մի քանի հատված։*

# ԼԵԳԵՆԴՆԵՐ ԿԱՄՉԱՏԿԱՅԻ ՄԱՍԻՆ

Գիտնականները պնդում են, որ մի ժամանակ Կամչատկա թերակղզին գոյություն չի ունեցել։ Այն առաջացել է օվկիանոսի հատակի հրաբխային գործունեությունից։ Ոչ ոք, իհարկե, չգիտե, թե դա ինչպես է տեղի ունեցել։ Բայց այն լեգենդը, որ մեզ պատմեցին Անավգայում, կարծում եմ, հենց այնպես չի ստեղծվել։ Ըստ այդ լեգենդի Կուտխը (Կամչատկայի աստվածն ու ստեղծողը) նախ գտնվում էր երկնքում, ապրում էր իր կնոջ՝ Իլկխումի հետ։ Այն ժամանակ ցամաք չկար։ Միայն երկինքն էր ու ծովը։ Եվ ահա, մի անգամ Կուտխը կնոջ հետ իջավ ծով։ Երևի ամեն ինչ լավ կլիներ, եթե կինը՝ Իլկխումը չցանկանար սուզվել։ Նրա ոտքերը ոչ մի կերպ հատակին չէին հասնում։ Այդ ժամանակ ծնվեց նրանց Սիմսկալու որդին։ Նա ջրի երեսն ելավ։ Մայրը բռնեց որդու գլխից, իսկ հայրը՝ ոտքերից, և հրամայեցին նրան դառնալ ցամաք։ Եվ նա դարձավ։ Այդ ցամաքը ուղիղ ու հարթ էր։ Այնտեղ ո՛չ սար կար, ո՛չ ձոր, ո՛չ գետ։ Կուտխը դահուկներ հագավ ու սկսեց քայլել հողի վրա։ Նրա դահուկների տեղերում փոսեր գոյացան, կիրճեր, հովիտներ, իսկ եզրերին՝ սարեր, լեռներ։ Կուտխն ու Իլկխումը երկուական տարի ապրեցին ամեն մի հովտում և ստեղծեցին գետեր, իսկ գետերում ձկներ։ Հետո ստեղծեցին տարբեր գազաններ։ Շատ էր ցուրտ։ Եվ որպեսզի կենդանիները չմրսեին, նրանք իրենց տաք շունչը փչեցին հրաբուխների մեջ։

Ու երբ Կուտխը համոզվեց, որ հնարավոր է ապրել իր ստեղծած երկրում, նա կրկին երկինք բարձրացավ։ Երկնքից նա հետևում էր կարգուկանոնին, մարդիկ վախենում էին խախտել նրա սահմանած օրենքները, որովհետև գողության համար կտրում էին նրանց ձեռքը արմունկից։ Իսկ եթե նույն մարդն էլի էր գողություն անում, նրա միակ թևին կեչու ճյուղ էին փաթաթում և վառում։ Մարդասպանին չէին դատում։ Մարդասպանին ուղղակի սպանում էին։

Կուտխի ստեղծած երկրում իրավունք ունեին ապրելու միայն ազնիվ մարդիկ։

• • •

Առավոտյան նկատեցինք, որ չումի մուտքի մոտ, ծառաբնին, որը միաժամանակ հենասյան դեր էր կատարում, ամրացված էր բաց երախով մի արջի գլուխ։ Առաջ էլ մեզ ասում էին, թե ծուռքայերը Կամչատկայում սուրբ են համարվում և որ թերակղզու հնաբնակները երբեք չեն ուտում արջի գլուխը։ Լեգենդը պատմում է, որ արջը մարդու հարազատ եղբայրն է եղել։ Կուտխը կնոջը պատվիրել է երկվորյակներ ծնել՝ մեկը մարդ, մյուսը արջ։ Նա այդպես է ցանկացել, որովհետև նրա երկրի մարդիկ սովորաբար սպանում էին երկվորյակներից մեկին։ Իսկ այս դեպքում բանը բոլորովին այլ էր. մեկը մարդ էր, մյուսը՝ արջ։ Ու միաժամանակ նրանք հարազատ եղբայրներ էին։

Երկու եղբայրները խաղաղ ապրում էին անտառում։ Օգնում մեկը մյուսին։ Առավոտից երեկո միասին էին լինում։ Միասին էլ պառկում էին քնելու։ Բայց ահա, երբ ձմեռը վրա հասավ, արջ եղբայրը մարդ եղբորն ասաց.— Արի՛ տնակ շինենք քեզ համար, այնտեղ կապրես մինչև գարուն, քանի դեռ ես քուն մտած կլինեմ իմ որջում։

Մարդ եղբայրը չցանկացավ արջ եղբորից բաժանվել և որոշեց, որ ինքն էլ կձմեռի որջում։

— Ես կարող եմ հանկարծ ցուրտ գալ ու տակովս անել քեզ,— ասաց արջ եղբայրը։

— Ոչինչ, ես զգույշ կլինեմ։

— Բայց շատ նեղվածք կլինի որջում։

— Ոչինչ, կդիմանամ։ Կարևորն այն է, որ երկուսով կդիմավորենք գարունը։

Այդպես էլ արեցին։ Երկուսով տեղավորվեցին մի որջում։ Բայց մի օր էլ մարդիկ հայտնվեցին։ Նրանք եկել էին նիզակներով և

# Ք Ո Ւ Թ Ի Կ Ը

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ



*Մի փոքրիկ շնիկ ընկել էր ջրով լի ավազանը: Մրոտ, ցեխոտ էր շնիկը: Ավազանը խորը չէր, բայց ջուրը սառն էր: Շնիկը դողում էր և կամաց վնգվնգում: Փորձում էր դուրս գալ, ավազանի եզրերը բարձր էին՝ չէր կարողանում:*

*Աշնան քամին չոր տերևներ և թղթի կտորներ էր հավաքում մայթերից ու փողոցներից, բերում գցում ավազանի մեջ: Շնիկը դողում էր վախից: Ատամները չխչխկում էին, աչքերի մեջ արցունքի կաթիլներ կային: Նրա դատարկ, սառած փորիկը կպել էր մեջքին, ձայնը նվաղել: Նա, երևի, այդպես էլ կմնար այդ ավազանում և մինչև առավոտ կսառչեր անշուշտ, եթե իրիկնամուտին ավազանի մոտով չանցներ մի երիտասարդ զույգ:*

*— Վա՜յ, շնիկը ջուրն է ընկել,— բացականչեց աղջիկը ու կանգ առավ: Նա հարսանեկան զգեստի մեջ էր: Ձյան պես ճերմակ զգեստը շատ էր սազում նրա սև աչքերին, սև մազերին, կեռ հոնքերին և խնձորի նման նուրբ այտերին:*

*Տղան պպզեց ավազանի եզրին: Նա մաքուր էր հագնված, կոշիկները փայլում էին, դեմքը ողողված էր անսահման երջանկությամբ: Նրանք այդ օրն էին ամուսնանում, պսակ էին գնում գրանցվելու:*

*— Հանի՛ր շնիկին,— խնդրեց աղջիկը.— մեղք է, սառչում է: Հանի՛ր, թող մեր համար նշանակալից այս օրը նշանակալից օր լինի նաև այս շնիկի համար:*

շատ են վիճում «Կամչատկա» բառի ծագման մասին: Մամուլում հաճախ հոդվածներ են տպագրվում այդ թեմայով, ու ամեն անգամ հարցը ոչ միայն չի պարզվում, այլև ավելի շատ է խճճվում:

Լեգենդները՝ լեգենդներ, բայց մեզ ամենից ավելի հետաքրքրեց այն փաստը, որի մասին կարելի է ասել, որ հաստատ է: Հաստատ հայտնի է, որ 1665 թվականին Ֆեոդոր Ալեքսեև Չյուկիչևի ջոկատում ծառայում էր ոմն Իվան Իվանով Կամչատոյ: Ջոկատը գրնացել էր Գիժիգա գետի երկարությամբ մինչև Օխոտի ծով, նույնիսկ մինչև Պենժինյան ծովախորշը: Երկու տարի հետո, այսինքն 1667 թվականին Չյուկիչևը Կամչատոյին ուղարկեց ինքնուրույն արշավի: Ստույգ տեղեկություններ կան, որ Կամչատոյը եղել է այնպիսի տեղերում, որտեղ ծովացուլի ոսկորներ կային: Իսկ դա նշանակում է, որ Կամչատոյը այնտեղ տեսել է այդ վայրի ամենամեծ գետը, որը 1667 թվականին պաշտոնապես առաջին անգամ կոչեցին Կամչատկա (սա արդեն ստույգ փաստ է): Հենց այդ թվականին էլ Տոբոլսկում վոյեվոդա Պյոտր Իվանովիչ Գոդունովը (Բորիս Գոդունով ցարի բարեկամը) կազմեց սիբիրյան հողերի քարտեզը, որտեղ ցույց էր տրված Կամչատկա գետը, որը թափվում էր Արևելյան ծովը, ինչպես այն ժամանակ կոչում էին Խաղաղ Օվկիանոսը:

Գետերը, հրաբխասարերը, լճերը, կղզիները, ծովածոցերը, Կամչատկայի բոլոր նշանավոր վայրերը, ամենաակզբում, այդպիսի այցելություններից հետո կոչվել են մարդկանց անուններով: Այնպես որ զարմանալի չէ, որ ամենամեծ գետը, իսկ հետագայում նաև թերակղզին կոչվել է Իվան Իվանովիչ Կամչատոյի անունով:



— Հիմա, սիրելի՛ս,— ասաց տղան, կռացավ ավազանի վրա և ձեռքը մեկնեց շնիկին: Շնիկը վախից էր թե զգուշությունից՝ կրճտացրեց ատամները և փորձեց կծել տղայի ձեռքը:

— Մի՛ վախենա, մո՛տ արի,— շշնջում էր տղան: Նա ամբողջովին թեքվեց, ձեռքը պարզեց, բռնեց շնիկի վզից և դուրս հանեց թրջված, կեղտոտ շնիկին ու դրեց գետնին: Շնիկը դողաց, մոտեցավ աղջկանը, ապա մեջքը ձգեց և որքան ուժ ուներ թաց մարմինը թափահարեց, ցեխն ու ջուրը շատրվանի նման ցայտեց աղջկա ճերմակ զգեստին, կեղտոտեց, ոտից գլուխ ապականեց և վազելով հեռացավ նրանից: Խեղճ, ցեխոտ աղջիկը նայեց իր շորերին և արտասվեց: Երիտասարդը վազեց շնիկի ետևից, բռնեց բերեց լացող աղջկա մոտ:

— Ի՞նչ անեմ,— ասաց տղան վշտացած,— նորից ջո՞ւրը նետեմ այս անպիտանին:

Աղջիկը նայեց շնիկի աչքերին և նրան թվաց, թե շնիկը սաստիկ վախեցել, այս անգամ դողում էր վախից: Սեղմել էր պոչը ետին ոտքերի միջև և փորձում էր լիզել աղջկա ձեռքը, բայց չէր համարձակվում: Աղջիկը զգաց այդ, ձեռքը մոտեցրեց շնիկին, և շնիկը քնքշորեն լիզեց նրա ձեռքը: Շնիկը պոչը շարժեց, դողացող մարմնով ձգվեց դեպի աղջիկը: Աղջիկը հանկարծ վերցրեց նրան, գրկեց և արագ քայլերով հեռացավ: Նրան հետևեց կարմրած երիտասարդը:

Տարիներ են անցել այդ օրից: Քութիկը՝ այդ անունն են տվել շնիկին, գեղեցիկ շուն է դարձել: Շատ են սիրում Քութիկին տերերը, Քութիկն էլ շատ է սիրում նրանց: Ամեն անգամ, երբ լողացնում են, կարծես ավազանից իրեն փրկելու օրը հիշեցնելու համար, նա թափահարում է թաց մարմինը, շատրվանի պես ցայտում է վրայի ջուրը, վերին շուրթի մի անկյունը թեթևակի բարձրանում է, կարծես ժպտում է և երնեկ տալիս այն օրվան, երբ իրեն հանեցին ջրից: Իսկ տանտիրուհին մեղմորեն շոյում է նրա թաց գըլուխը, կարծես ասում.

— Այո՛, երնեկ այն օրվան, Քութի՛կ, երբ շորերս կեղտոտեցիր, լաց եղա... լավ օր էր: Այդպիսի օր մարդու համար կյանքում մեկ անգամ է լինում միայն:

Նկ. ՀԱՅԿԱԶՈՒՆ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ



## ԾՈՒՅԼԻ ԵՐԱԶԱՆՔԸ

*ԼԵՎՈՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ*

Պառկած կանաչ խոտերի մեջ,
Երազում էր ծույլը անվերջ.
— Տրակտորիստ թե որ դառնամ,
Մուր ու նավթին ո՞նց դիմանամ...
Շատ մաքուր է օդանավը,
Օդաչուի միակ ցա՜վը...
Շարժիչն հանկարծ որ խափանվի,
Խեղճ Մուշեղիս ո՞ւր կտանի...
Չէ՛, նավաստի...
Ջրին մարդը կվստահի՞...
Տեսար, բռնեց ուժեղ քամի,
Նավը տարավ միանգամից...
Թե ուսուցիչ դառնա՜մ, լավ է,
Բայց այդ գործն էլ գլխացավ է...—
Չկար մեկը ասեր՝ Մուշեղ,
Թե չլինես կամքով ուժեղ,
Չսովորես ու ծուլանաս,
Մտքով մնաս այդպես տհաս,
Մարդ չես դառնա, երբեք, տղա՛ս...

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

## ԿԱԽԱՐԴԻ ՊԱՊԻԿԸ

*ՆՈՐԱՅՐ ՍԱՐԳՍՅԱՆ*

Հեռո՜ւ, անհայտ ծովի ափին
Ապրում է մի բարի պապիկ,
Անքուն է նա ու միշտ ոտի,
Ձեռքին բռնած միշտ չորս գոտի:
Կանաչ գոտին է հենց կապում
Գարնան ծառերն են սոսափում,
Կարմիր գոտին երբ հրավառ՝
Հյուր է գալիս մի տաք ամառ:
Երրորդ գոտին հազարագույն՝
Պարգևում է ոսկե աշուն:
Իսկ չորրորդը ճերմակաթել
Ձյուն է բերում, ճերմա՜կ ձմեռ:
Որ գոտին է կապել հիմա.
Շուրջդ նայիր ու՛ կիմանաս:



# ՊԱՏՄՎԱԾՔ, ՈՐԻ ՎԵՐՆԱԳԻՐԸ

*ԱԼԵՔՍԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

3.

Փոքրիկը գնա՜ց, գնա՜ց ու տեսավ իր առջև մի նոր քաղաք: Աչքերը հիացմունքից փայլեցին:

Մի րոպե: Երևի առաջին անգա՞մն ես լսում Փոքրիկի մասին: Նախորդ պատմությունը չգիտե՞ս: Ի՞նչ կա որ: Երևի զբաղված ես եղել: Միանգամից ասեմ, որ նա անվերջ ճանապարհորդում է, որոնում: Ի՞նչ... Որպեսզի նախորդ պատմությունը չկրկնեմ, դու գտիր այն և կարդա: Կգտնես այստեղ: Ամսագրի նախորդ համարներում:

Պայմանավորվեցի՞նք: Լավ: Ուրեմն, շարունակենք:

Որտե՞ղ էինք հասել... Հիշեցի: Ոչ մի տեղ էլ չենք հասել, որովհետև նոր ենք սկսում: Ահա, Փոքրիկը դեռ զարմացած կանգնած է, աչքերն էլ շարունակում են փայլել հիացմունքից: Այս քաղաքում տները գունավոր քարերից են, իրարից հեռու, փոքրիկ ու հրաշալի: Իսկական հեքիաթային դղյակներ: Փոքրիկը, իհարկե, չի տեսել հեքիաթային դղյակ: Միայն կարդացել է դրանց մասին և պատկերացրել ճիշտ այսպես: Դղյակները շրջապատված են ծաղկանոցներով, պլացիկ ու թախծոտ ծառերով: Ամեն բակում գրանիտե ջրավազան կա, որտեղ կարելի է լողանալ: Ջրավազանները շրջապատված են քարե նստարաններով, որպեսզի մարդիկ նստեն, հանգստանան: Ճոճվե՞լ ես ուզում: Խնդրեմ: Ծառերի ստվերում հրաշալի ճոճանակներ կան: Թենիս խաղա՞լ ես ցանկանում: Ահա սեղանները... Եվ էլի հազար ու մի հրաշալիքներ:



Փոքրիկը ուրախ-ուրախ առաջ է գնում: Առաջ է գնում և մեկ էլ զարմացած կանգ առնում: Որտե՞ղ են մարդիկ: Ո՛չ լողացող կա, ո՛չ հանգստացող, ո՛չ էլ խաղացող:

Քաղաքն ընդամենը մի բնակիչ ունի: Տարիքավոր, ուրախ քեռի է: Նստել է երկնագույն տան բակում և ճաշում է գրանիտե սեղանի վրա: Ուտում է խաշած ձու, խորոված միս, տապակած հավ, վարունգ, պոմիդոր, զանազան կանաչեղեն: Խմում է կոնյակ, թարխունի լիմոնադ, նարնջի հյութ: Ուտում և խմում է շատ ախորժակով և շատ ուրախ: Երբեմն էլ գովում է ինչ-որ մարդկանց, որոնք չեն երևում: Նա ուղղակի խոսում է այդ չերևացող մարդկանց հետ: Խորովածը լավաշով ուտելիս, օրինակ, ասում է.

— Շնորհակալություն, Դեղնաղե՛մ:

— Ո՞վ է Դեղնաղեմը,— հարցնում է զարմացած Փոքրիկը:

— Մեր քաղաքի բնակիչներից է:

— Իսկ դու ինչո՞ւ ես շնորհակալություն հայտնում նրան:

— Որովհետև նա շատ համեղ խորոված է պատրաստել Առաջնեկի համար:

— Ո՞վ է Առաջնեկը:

— Դեղնաղեմի ավագ որդին:

— Իսկ դու ինչո՞ւ ես ուտում Առաջնեկի համար պատրաստված խորովածը:

— Որովհետև նա այնտեղ է,— պատասխանում է շատ ախորժակով և շատ ուրախ քեռին, մատը մեկնելով երկնագույն տան կողմը:

— Ի՞նչ անենք, որ այնտեղ է: Հետո կգա և կուտի իր խորովածը:

— Նա չի կարող գալ և չի կարող ուտել:

Փոքրիկը ավելի է զարմանում:

— Առաջնեկը վաղուց է մահացել,— բացատրում է շատ ախորժակով և շատ ուրախ քեռին:— Չգիտե՞ս, որ հանգուցյալները չեն կարող քայլել և չեն կարող ուտել:

# ՀԱՅՏՆԻ Է ԴԱՌՆՈՒՄ ՎԵՐՋՈՒՄ

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

— Իսկ ինչո՞ւ եք նրան պահել տան մեջ,— հարցնում է Փոքրիկը և անհամբերությունից երկրորդ հարցն էլ է տալիս.— Էլ ինչո՞ւ են նրա համար այսքան ուտելիք բերել, եթե նա մահացել է և ուտել չի կարող:

— Առաջ ո՞ր հարցիդ պատասխանեմ:— Քեռին մի բաժակ լիմոնադ է խմում և պատասխանում առաջին հարցին:— Առաջնեկի գերեզմանը հենց այս տունն է:

— Այս ամբողջ տունը մի գերեզմա՞ն...

Մինչ Փոքրիկը շարունակում է զարմանալ, քեռին մի բաժակ նարնջի հյութ է խմում և պատասխանում երկրորդ հարցին.

— Մեր քաղաքի բնակիչները հանգուցյալների համար ոչինչ չեն խնայում: Իրենց էլ չեն խնայում: Եվ շատ ճիշտ են անում: Այս խեղճերը կենդանության ժամանակ ամեն ինչից զուրկ են եղել, գոնե մահից հետո ունենան:

Շատ ախորժակով և շատ ուրախ քեռին մի բաժակ կոնյակ էլ է խմում և հերթով ցույց է տալիս հանգուցյալների համար կառուցված գեղեցիկ տները, լողավազանները. պուրակները: Մի խոսքով, ցույց է տալիս այն ամենը, ինչ Փոքրիկն էլ է տեսնում: Տեսնում է և չի կարողանում ոչինչ հասկանալ:

Քեռին աչք է ցանում վարունգի շերտի վրա, հաճույքով ուտում այն և հաճույքով էլ բացատրում.

— Կենդանի ժամանակ Առաջնեկը հիմար-հիմար բաներ էր դուրս տալիս: Հոր հոգին հանում էր իր խնդրանքներով. «Ինձ համար երկնագույն տուն կառուցիր, լողավազան, ճոճանակ պատրաստիր, թենիսի սեղան»: Եվ էլի հազար ու մի հիմար բաներ: Դեղնադեմը ծեծում էր նրան և հետը տանում դաշտ, աշխատեցնում արևի տակ, որ խելքի գա, որ ազատվի նման հիմար մտքերից: Վերջն ու ծեծը երկար շարունակվեց: Առաջնեկի գլուխը չէր ազատվում հիմար-հիմար մտքերից, և նա օրեցօր մաշվում էր, դեղնում: Հետո էլ մահացավ: Դեղնադեմը շատ վշտացավ: Նա մազերն էր փետում և աղաչում Առաջնեկին, որ բաց անի իր աչքերը, խոսի, գոնե մի բառ ասի: «Ինչ ուզում ես՝ խնդրիր, ինչքան ուզում ես՝ վիճիր,— աղաչում էր Դեղնադեմը,— միայն թե բաց արա՝ աչքերդ, խոսիր, և ես ամեն ինչ կանեմ քեզ համար»: Իսկ Առաջնեկը հանգիստ պառկած էր. չէր խոսում, չէր շարժվում, առաջվա նման չէր վիճում հոր հետ ու նրա հոգին չէր հանում իր խնդրանքներով: Դե, երբ մարդը իրեն այդպես խելոք է պահում, չի վիճում, ոչինչ չի խնդրում, հոգի չի հանում, նրան ո՞վ չի սիրի: Այդ դեպքում ո՞վ չի կատարի նրա խնդրանքը: Այդպես էլ Դեղնադեմը սիրեց խելոքացած, այլևս չվիճող ու չանհանգստացնող Առաջնեկին և կատարեց նրա խնդրանքը: Ահա, տես:

— Իսկ որտե՞ղ է ձեր քաղաքը,— հարցնում է Փոքրիկը, որ ուզում է շտապ տեսնել այն:

— Քիչ այն կողմ,— ասում է շատ ախորժակով և շատ ուրախ քեռին:— Գերեզմանատնից անցնես, կտեսնես:

Փոքրիկը անցնում է զարմանահրաշ գերեզմանատունը, բայց քաղաք չի տեսնում: Առջևում իրար վրա լցված խրճիթներ են:

Մոտենում է ամենամոտիկ բակում աղմկող երեխաներին ու հավ տապակող ծեր կնոջը, հարցնում.

— Չե՞ք ասի, թե որտեղ է քաղաքը:

Ծեր կինը ապտակում է ինչ-որ բան խնդրող երեխաներին, հետո քշում տապակվող հավի մոտից: Հետո էլ ինքն է հարցնում Փոքրիկին.





# ԱՏՈՄԱՅԻՆ ՍՐՏՈՎ ՆԱՎԱՏՈՐՄԱՊԵՏԸ

*Ս. ՄԱՐԱԿՈՒԼԻՆ*

*Պատմություն Լենինգրադում կառուցված աշխարհի ամենամեծ սառցահատի մասին*

## ԻՆՉՈՒ Է ՆԱ ԱՆՀՐԱԺԵՇՏ

Հազար տարի մարդը լողում է հյուսիսային ծովերում: Բայց սառույցների դեմ իսկական պայքարը մարդիկ սկսել են անցյալ դարի երկրորդ կեսին: 1864 թվականին ռուսական ոչ մեծ, 60 ձիաուժ կարողությամբ սառցահատ-ջերմանավ «Պայլոտը» կոտրեց Ֆիննական ծոցում Օրանիենբաումի և Կրոնշտադտի միջև ընկած սառույցը:

Մարդկությունը չէր դադարում երազել Արկտիկայի սառույցները հաղթահարելու մասին: Նշանավոր «Երմակ» սառցահատի հեղինակ, ինժեներ Աֆանասևը ասում էր, որ սառույցների մեջ ապատ նավարկելու համար անհրաժեշտ է տասը հազար ձիաուժ կարողությամբ շարժիչ ունեցող նավ: Այն ժամանակ Աֆանասևի երազանքները հեքիաթի էին նման:

Ատոմային էներգիայի շնորհիվ այժմ իրականացել է այդ երազանքը: Տասնհինգ տարի Արկտիկայի ծովերն է ակոսում աշխարհում առաջին «Լենին» ատոմային սառցահատը, որի «մկաններում» 44 հազար ձիաուժ է կուտակված: Անցյալ տարվա հունիսին Հյուսիսային սառուցյալ օվկիանոսում նավագնացությունը սկսեց «Արկտիկա» ատոմագնացը՝ կառուցված Լենինգրադի Բալթյան գործարանում:

Ինչո՞ւ են անհրաժեշտ այսպիսի ուժեղ սառցային «մարտիկ-

---

— Դու ո՞ր քաղաքն ես ուզում:

— Գերեզմանատան պահակ քեռիենց քաղաքը:

— Սա է քո ուզած քաղաքը:

Կինը տապակած հավը դնում է կոտրված ոտքով սեղանին փռած լավաշների վրա: Նորից է ապտակում ու հեռու քշում իր շուրջը խմբված երեխաներին:

— Ի՞նչ են ուզում երեխաները,— հարցնում է Փոքրիկը:

— Տապակած հավ:

— Թող ուտեն:

— Հավը Թխահերի համար է:

— Իսկ որտե՞ղ է Թխահերը:

— Գերեզմանատանը:

— Պահա՞կն է:

— Թխահերը անցած տարի է մահացել: Դաշտում բանջարեղեն որոնելիս թունավոր խոտ էր կերել:

Փոքրիկը գրպանից հանում է տաքանալուց փափկած շոկոլադի սալիկը, բաժանում քաղցած երեխաներին: Նրանք սկսում են ուտել, և նրանց աչքերը փայլում են հաճույքից:

Մյուս բակերում էլ են հավ տապակում կամ միս խորովում և զայրացած հեռու քշում երեխաներին:

Փոքրիկը հիշում է գերեզմանատան շատ ախորժակով ու շատ ուրախ քեռու պատմածը: Այլևս չի ցանկանում հարցեր տալ քաղաքի մյուս բնակիչներին: Երեխաների հետ էլ չի խոսում, որովհետև գրպանում այլևս շոկոլադ չկա: Անցնում է խղճուկ տնակների մոտով, որտեղ ո՛չ ծառեր կան, ո՛չ ծաղկանոցներ, ո՛չ լողավազաններ, ո՛չ ճոճանակներ, ո՛չ էլ թենիսի սեղաններ: Երեխաները ձանձրույթով ու տխուր շրջում են փոշոտ բակերում:

Փոքրիկն էլ է տխրում և արագ քայլում է առաջ: Տարօրինակ քաղաքից անհագին հեռանալուց հետո է միայն կանգ առնում: Գրպանից հանում է ծոցատետրը, որի մեջ, սովորաբար, գրի է առնում իր տեսած բնակավայրերի անունները: Ավելի ճիշտ, ինքն է անուն դնում տեսնելուց հետո: Մի խոսքով, բաց է անում ծոցատետրը և գրում. «ՄԵՌԱԾ ՍԻՐԵԼԻՆԵՐԻ ՔԱՂԱՔ»:

ներ»: Վերջին տարիներին մեր երկրի հյուսիսում և արևելքում օգտակար հանածոների պաշարներ են հայտնաբերվել: Սակայն հյուսիսային ծովային ճանապարհի չորս հազար մղոնը տարվա մեծ մասը ծածկված է սառցադաշտերով: Որքան հզոր է սառցահատը, այնքան հեշտությամբ կփշրվեն ամենահաստ սառցաշերտերը, այնքան հարմար «ջրանցքներ» կբացվեն նավերի քարավանների համար: «Լենին» սառցահատը տարվա մեջ 6—7 ամսով երկարաձգեց նավագնացությունը: Իսկ «Արկտիկան» ավելի շատ կերկարաձգի:

## ԼՈՂԱՑՈՂ ՔԱՂԱՔԸ

«Արկտիկա» սառցահատում 1280 սենյակ կա: Դա մի ամբողջ լողացող քաղաք է: Նավի վրա բարդ էլեկտրոնային և ռադիոապարատներ են տեղադրված, հզոր շարժիչներ, որոնց աշխատանքի համար շատ էներգիա է պահանջվում: Եթե այն ստանային քարածուխից, ապա նավերի ողջ քարավանը, որոնց առաջնորդում է այդպիսի հզոր սառցահատը, պետք է լցնեին ոչ թե օգտակար բեռներով, այլ՝ ածուխով: Հեղուկ վառելիքն էլ չէր փրկի: Մինչդեռ «Արկտիկայի» ողջ վառելիքը տեղավորված է մի փոքր պահեստում և բավարարում է շատ ամիսներ: Այդ վառելիքը միջուկային է և նրանից ատոմային էներգիա է ստացվում:

Մեր երկրի հարյուրավոր գործարաններ ու ինստիտուտներ «խելացի» սարքեր են պատրաստել, որոնք փոխարինում են էլեկտրիկներին, մեխանիկներին, հերթապահներին ու բազմաթիվ այլ մասնագիտությունների տեր մարդկանց: Ավտոմատները սարքավորման թեթևակի «տկարություն» նկատելիս անջատում են այն և միացնում փոխարինող սարքավորումը: Իսկ մարդուն մնում է սեղմել անհրաժեշտ կոճակը, և նավային ավտոմատները նրան կզեկուցեն կատարված աշխատանքի մասին:

Նավի «սիրտը» միջուկային ռեակտորն է, որը հաստ պողպատե պատով է շրջապատված հագած ատոմային ռեակտորն է: «Կաթսայի» մեջ մրրկում է ահռելի ուժի «խարույկը», իսկ այդ կարմանալի «ինքնաեռի» կափարիչը հազիվ է տաքանում: Ռեակտորին կարելի է մոտենալ առանց որևէ պաշտպանության. խաղաղ ատոմի աշխատանքից անջատվող ողջ ճառագայթումը կլանում է հաստ կրահը:

Ատոմագնացն ունի իր ուղղաթիռը, որը հետախուզում է նավի առջևի սառույցը, այստեղ կա նաև ավտոմեքենա:

Նավի անձնակազմը ապրում է մեկ-երկու տեղանոց նավախցիկներում: Այստեղ կա ցնցուղ, ֆիննական բաղնիք, լողավազան, հոլակապ կինոսրահ և մարզական դահլիճ և նույնիսկ ծաղկեր, որտեղ ծաղիկներ և կանաչ սոխ է աճում:

## ՈՎ Է ՎԱՐԵԼՈՒ ՍԱՌՑԱՀԱՏԸ

Սառցահատային նավատորմի նավատորմապետի անձնակազմի ընտրությունը կատարվում է գրեթե այնպիսի բծախնդրությամբ, ինչպիսին կատարվում է տիեզերանավերի անձնակազմի ընտրությունը: Զարմանալի չէ դա, որովհետև որքան էլ հուսալի լինի ավտոմատիկան, որքան էլ խելացի լինեն հաշվողական մեքենան ու մյուս էլեկտրոնային սարքերը, վերջին խոսքը մարդունն է:

«Արկտիկա» սառցահատի նավապետ Յու. Ս. Կուչիևը ծնվել է Հյուսիսային Օսեթիայի Տիբ լեռնային աուլում: Մի ծանոթ նրան խորհուրդ տվեց նավաստի դառնալ հյուսիսում: Կովկասցի ուսուցիչներն են եղել բևեռային նշանավոր նավապետները: Ժամանակի ընթացքում նրա մոտ մշակվել է համբերություն ու սովորույթ սառցային միօրինակ կուրացուցիչ բնապատկերի նկատմամբ: Համարձակությունը, սուր աչքը և համառությունը նրան օգնեցին դառնալ սառցահատի փորձված նավապետ:

Տարբեր պաշտոններ ու պարտականություններ է նա կատարել «Երմակ», «Կրասին», «Սիբիրյակով», «Մալիգին», «Կիև» և այլ նավերի վրա հյուսիսային ծովերով նավարկելիս:

## ՔՆՆՈՒԹՅՈՒՆ

Լենինգրադից «Արկտիկան» մեկնում էր Մուրմանսկի նավահանգիստ՝ մշտական գրանցման: Ճանապարհին ընկավ ուժեղ ալեկոծության մեջ: Ես նույնպես հրապարտացա նրանց փոխարեն, ովքեր ստեղծել էին նավ-հսկան, երբ «Արկտիկայի» նավապետն ասաց.

— Շատ հաջող նավ է ստացվել, ծովագնացության հրաշալի հատկանիշներ ունի:

Հյուսիսային սառուցյալ օվկիանոս կատարած առաջին երթից հետո ես նորից զրուցեցի նավապետի հետ: Նա ասաց, որ նավագնացության հիանալի սարքավորումների շնորհիվ սառցահատը վստահ գնում էր մառախուղի միջով: «Արկտիկան» ծանր սառույցներ էր խորտակում այնպիսի տեղերում, ուր մինչ այդ ոչ մի նավ չէր եղել: Մեր հայրենիքը կարող է հպարտանալ աշխարհի ամենահզոր սառցահատով:

Թարգմ. Վ. ՄԵԽԱԿՅԱՆԻ


Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ

# ԲՆՈՒԹՅՈՒՆԸ ԹՇՆԱՄԻՆԵՐԻՑ ՊԱՇՏՊԱՆԵԼԸ ԲՈԼՈՐԻՍ ԳՈՐԾՆ Է

Բնության թովչանքը լավ վայելելուց, զվարճանալուց հետո, «Ոսկե արշավի» մասնակից մի խումբ պիոներների հետ մտանք այն անտառամեջ կածանը, որը տանում էր դեպի Մշկավանք: Հիացանք կոթողի գեղեցկությամբ: Սակայն սրտի ցավով նկատեցինք նաև, թե ինչպես շնորհաշատ վարպետների ձեռքով 700 տարի առաջ գրված արձանագրություններն ու սրբատաշ քարերը ծածկված են «Սուրիկ», «Գագիկ», «Սենիկ» և այլ անուններով ու անճոռնի մակագրություններով: Մշկավանքից հեռացանք ծանր տպավորությամբ: Պիոներները վճռեցին հաջորդ անգամ գալ և հուշարձանի պատերը մաքրել այդ աղտեղությունից:



Ճանապարհը շարունակվում էր անտառի միջով և խոսակցությունը վերաբերում էր դեղաբույսերին: Առավել ուշագրավ զրույց բացվեց մասրենու մասին, որը ավելի հաճախ էր հանդիպում անտառում:

— Մասուրը,— ասաց Սուրիկը,— օգտակար է լյարդը, երիկամները, ստամոքսը, լեղերը բուժելու համար և ընդհանրապես վիտամիններով հարուստ է:

Իսկ Սուսաննան ավելացրեց.

— Մասուրը վաղուց է հայտնի եղել իր բուժիչ հատկություններով: Նույնիսկ ռուսական ցար Միխայիլ Ռոմանովը արգելում էր հիվանդ ազնվականների համար դեղատներից մասուր դուրս գրել առանց իր ստորագրության: Այն գիրքը, որի մեջ գրված էր մասուրից օգտվողների ազգանունները, տիտղոսաթերթի վրա այսպիսի մակագրություն ուներ՝ «Ում տունը արև ու մասուր շատ մտնի, այնտեղ բժիշկ ուշ կայցելի»:

Այսպես զրուցելով առաջանում էինք և ճանապարհին հանդիպեցինք մի խոպարածի: Նա մասրենու ճյուղերը կտրում և չհասունացած մասուրը թափում էր խոպերի առջև:

Երբ երեխաները վրդոված ասացին, որ այդպես չի կարելի վարվել դեղաբույսերի հետ, մասուրը հասունանալուն պես իրենք պետք է հավաքեն ու պետությանը հանձնեն, խոպարածը վրդովված նկատեց.

— Անտառը մենակ ձերը չէ, հետո մի երկու ճյուղ կտրելով մասրենին չի վերջանա:

Մեր բացատրությունները ապարդյուն անցան: Շարունակեցինք ճանապարհը: Հեռվից եկող կացնի ձայնը շեղեց մեր ուղղությունը: Մոտեցանք և ի՜նչ. երկու կին նստած, կտրված ճյուղերից հոն էին պոկում, իսկ կտրված հոնի ճյուղերի միջով արահետը տանում էր դեպի հեռվից լսվող կացնի ձայնը: Կտրողը միջին տարիքի մի տղամարդ էր և մեր նախատինքից հետո էլ իր բարբարոսական աշխատանքը չդադարեցրեց:

Վրդովված այդ ամենից, լեռան ստորոտ իջանք, այստեղ էլ մեկ այլ ցավալի դեպքի ականատես եղանք: Մի խումբ մարդիկ մասրենու շիվերից խորոված շամփուրներ էին պատրաստում: Փորձեցինք կգուշացնել բնության այդ թշնամիներին և հասկացնել, որ մասրենին շամփուրի համար չէ, այլ կարևոր դեղաբույս է: Իսկ նրանք կոչյալու կամ ներողություն խնդրելու փոխարեն արհամարհանքով պատասխանեցին.

— Մի քանի շիվով անտառը չավերվեց: Հրեն էնքան մասրենի կա, որ արահետներն էլ է փակել:

— Այժմ կա,— ասաց Լևոնը,— բայց եթե այսպես շարունակվի, մի քանի տարի հետո ոչինչ չի մնա:

Մոտենում էինք ավանին և ճանապարհին կուզահեռ ձգվող այգիների ցանկապատերը նորից կարմրապտուղ մասրենիներով էին պարդարված: Սկզբում մեզ թվաց, թե դրանք հոգատար ձեռքեր են տնկել և պտուղները դեռ չեն հավաքել, սակայն պարզվեց, որ բնության թշնամիները իրենց այգիները ցանկապատել են կտրված մասրենիներով:

Ցանկապատերից մեկի մոտ հանդիպեցինք Վարդան բիձուն: Պիոներները ասացին նրան, որ մասրենու հետ այդպես անխիղճ վարվել չի կարելի: Սկզբում նա փորձեց արդարանալ, սակայն քիչ անց, խոստովանեց իր մեղքը և ասաց, որ այլևս նման բան չի անի: Այսպես տխուր ավարտվեց ուրախ սկսված մեր արշավը:

*ՍԱՄՎԵԼ ՑԻԼԻՆԳԱՐՅԱՆ*

*Նոյեմբերյանի №1 դպրոցի դիրեկտոր, պատմական գիտությունների թեկնածու*



# ՆԱՄԱԿ ՆԱՄԱԿԻ ՄԱՍԻՆ

ԴԱՎԻԹ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Մենք բոլորս հաճույքով ենք կարդում Վահան Տերյանի, Տուրգենևի, հոլանդացի նկարիչ Վան Գոգի և ուրիշ մեծ մարդկանց նամակները: Այդ նամակները արվեստի իսկական ստեղծագործություններ են. և՛ խորաթափանց մտքեր, և՛ նրբին ապրումներ, մի խոսքով, խոհերի ու զգացմունքների, ինչպիսի շտեմարան: Կարճ կամ ծավալուն այդ մենախոսություններում երևում է, հեղինակների հարուստ ներաշխարհը: Դեռ ավելին՝ երևում է նրանց ապրած ժամանակաշրջանը:

Մեր դարը հազիվ թե այդպիսի նամակներ թողնի սերունդներին: Ոչ թե այն պատճառով, որ նշանավոր մարդիկ չկան: Յուրաքանչյուրը հեռախոս ունի, փոստային բացիկներն ու արագավազ հեռագիրը կարծես ավելի են համապատասխանում արագավազ մեր ժամանակին, իսկ նամակները դարձել են հնարավորին չափ համառոտ ու գործնական:

— Ուրեմն ի՞նչ,— անհամբեր հեգնանքով կհարցնեն ոմանք,— կտրե՞նք հեռախոսալարերն ու մեր բարեկամների հետ զրուցենք նամակներո՞վ...

Իհարկե, ոչ: Նամակների մասին ես բոլորովին այլ առիթով եմ խոսում:

1964 թվականի ամռանը ես հանգստանում էի «Պիոներական հանրապետությունում»՝ «Արտեկ» համամիութենական ճամբարում: Մինչև հիմա էլ հիշում եմ վիթխարի խարույկները, հետաքրքիր հանդիպումները, բոլոր այն երգերը, որ երգում էինք արշավների, Այուդաղ բարձրանալու ժամանակ: Այդ օրերի մասին պատմող բազմաթիվ լուսանկարներ են մնացել, բայց մեր ջոկատի անդամների դեմքերը մտաբերելու համար ես լուսանկարներին չեմ նայում, բոլորն էլ աչքիս առաջ են:

Բաժանվելուց առաջ մենք հասցեներ փոխանակեցինք: Տուն եկանք, մի քանի նամակներ գրեցինք, հետո կամաց-կամաց դադարեցինք կապ պահպանել: Անցավ տասը տարի: Ճիշտն ասած, ինձ միշտ էլ հետաքրքրում էր իմ ընկերների ճակատագիրը: Հետաքրքիր էր իմանալ, թե ուր է տարել նրանց կյանքը, ինչ են դարձել նրանք, ինչպես են մտածում, ապրում... Եվ ահա անցյալ տարվա գարնանը ես մի քանի նամակ ուղարկեցի մոտս պահպանված հասցեներով: Պատասխանները չուշացան:

Ամենից առաջ ստացա Տանյա Միրոնովայի պատասխանը՝ Արխանգելսկից: Նա գրում էր, որ ավարտել է բժշկական ինստիտուտը և աշխատում է անդրբևեռային գյուղում: Վեց ամիս՝ գիշեր, վեց ամիս՝ ցերեկ: Ե՛վ ռոմանտիկա, և՛ դժվարություններ: Ես հիմա կարող եմ բազմաթիվ տողեր մեջբերել նրա նամակներից, որոնք պատմում են քսանչորսամյա աղջկա համար բոլորովին էլ ոչ թեթև աշխատանքի մասին, այն մասին, թե նորավարտ բժշկուհին ինչպես է գիշերներ անցկացրել հիվանդ երեխայի մահճակալի մոտ, հուզվել, նաև՝ ուրախացել, որ կարողանում է օգտակար լինել մարդկանց: Այս ամենի հետ մեկտեղ, Տանյան գրում էր, որ «աշխարհից կտրված» այդ հեռավոր գյուղում իրեն շատ է օգնում նամակագրությունը, որ նամակները թույլ են տալիս հաղթահարել մենակությունը, որ նամակ գրելով ինքը ծանոթանում է... իր սեփական մտքերին, հասունանում:

Նույն ամառը Տանյան մի քանի օրով Երևան եկավ: Մենք հանդիպեցինք որպես հին ծանոթներ, որոնց վերստին մտերմացրել էին նամակները:

Նամակը միավորում է մարդկանց: Պատկերացրեք, թե ինչ հաճելի է օրերով սպասել փոստատարին, բացել հազարավոր կիլոմետրեր կտրած ծրարը, կարդալ: Այն, ինչ գրում ես սպիտակ թղթին, հնարավոր չէ ասել ո՛չ հեռախոսով և ո՛չ էլ անմիջական զրույցի ժամանակ: Եվ ես շնորհակալ եմ առաջին նամակը գրող անհայտ մարդուն, որը դարեր առաջ դրել է տարբեր մարդկանց միմյանց հետ կապող այդ անտեսանելի կամուրջի առաջին քարը...

Պիոներները հաճախ են նամակ ստանում: Գրում են ճամբարային ընկերները կամ մեր երկրի հեռավոր քաղաքներում ապրող անծանոթ բարեկամները, որոնք որոշում են կապ հաստատել իրենց հասակակիցների հետ: Բայց գաղտնիք չէ, որ շատերը երբեմն անպատասխան են թողնում այդ նամակները կամ էլ գրում են անբովանդակ նամակներ և մեկ-երկու նամակից հետո ընդհատում կապը: «Արտեկի» իմ վաղեմի ընկերների հետ սովորական բարեկամության սովորական այս պատմությունը ես արեցի մեկ անգամ ևս ձեզ հիշեցնելու համար, թե ինչպես է հինգ-վեց օր ճամփա կտրող նամակը մի քանի ժամում մտերմացնում տարբեր քաղաքներում ապրող մարդկանց...

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԱՋԹԵՎԱՅԻՆ ԴՐՈՒԺԻՆԱՆ

*ԹԵՎՈՍ ՊԵՏՐՈՍՅԱՆ*

Ղափանի շրջանի Լեռնաձորի ութամյա դպրոցի Յու. Գագարինի անվան պիոներական դրուժինան «Կոմունիստներից օրինակ ենք վերցնում» երթում կատարած լավագույն աշխատանքների համար արժանացել է աջթևային կոչման:

Վերջին 5 տարիների ընթացքում դպրոցում ոչ մի երկտարեցի չկա, իսկ ուսման առաջադիմությունը միշտ էլ 100 տոկոս է եղել: Պիոներները սիրում և պահպանում են գիրքը, հաճախ են կազմակերպում գրքի քննարկումներ, պատանի ստեղծագործողների մրցույթներ: Ամեն քառորդի վերջին չորեքշաբթի օրը գրքի ստուգատեսի օր է: Դասագիրքը մաքուր ու խնամքով պահողին հանձնվում է հուշանվեր, դրուժինայի խորհրդի մրցանակը:

Դպրոցում երեխաների ուժերով ստեղծվել են մանկական մատենաշարների, մաթեմատիկական գրքերի գրադարաններ, հավաքում են ժողովրդական բանահյուսության նմուշներ: Տարիների ընթացքում նրանց կատարած աշխատանքները ամփոփված են բարբառագիտական, բուսաբանական բառարաններում, հեքիաթների, ավանդությունների, խրախճանականների ձեռագիր ժողովածուներում, որոնցից առանձին նմուշներ հրապարակվել են մամուլում:

Պիոներների մեծ մասը ունեն նամականիշերի, կրծքանշանների, ապարների, լուցկու տուփերի, հերբարիումների հավաքածուներ, պարբերաբար անցկացվում են միջջոկատային մրցույթներ, համադպրոցական ցուցահանդեսներ: Տարիների ընթացքում կատարած հայրենագիտական-բանահավաքման աշխատանքների արդյունքը հայրենագիտական հարուստ թանգարանն է՝ «Տիքնիկ» անունով (Լեռնաձորի պատմական անունը):

Պիոներները մասնակցում են սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառքի վայրերով համամիութենական «Իմ հայրենիքը՝ ՍՍՀՄ» արշավին, պահպանում ու խնամում են պատմական ու ժամանակակից հուշարձանները:

Ինչպես ուսման մեջ, այնպես էլ աշխատանքում Յու. Գագարինի անվան դրուժինայի պիոներները ձգտում են հավասարվել կոմունիստներին, հնգամյակի առաջամարտիկ կոմերիտականներին: Միայն անցած աշնանը նրանք հավաքել են 78 կգ մասուր, 18 տոննա կարտոֆիլ, դպրոցի համար վառելափայտ: «Միլիոն՝ հայրենիքին» մրցույթի գծով 1650 կգ թղթի թափոն են հանձնել, իսկ «ԲԱՄ-ին՝ պիոներական երկաթգծեր» օպերացիայի ֆոնդին՝ 3 տոննա մետաղի ջարդոն: Կանաչապատել են դպրոցի շրջակայքը, հիմնել զոհված համագյուղացիների հիշատակն հավերժացնող փոքրիկ պուրակ, տնկելով այնտեղ այնքան ծառ, որքան լեռնաձորցիներից զոհվել են մեծ Հայրենականում: Կարմիր հետախույզները հայրենակիցների անունները ուղարկել են այն վայրերի դպրոցներին, որտեղ ընկել են նրանք: Արդեն ստացվել են առաջին արձագանքները: ՈՒՍՍՀ Բերլոզովկայի շրջանի Ծլչենկո գյուղի պիոներները պարզել են, որ լեռնաձորցի Շմավոն Բագրատի Գևորգյանը զոհվել է իրենց գյուղի ազատագրման համար մղված մարտերում և թաղված է այնտեղ:

Ջոկատներում ամեն քառորդի վերջում ամփոփվում է «Կոմունիստներից օրինակ ենք վերցնում» երթը: Հաղթողները իրավունք ստացան ստորագրելու ՍՄԿԿ 25-րդ համագումարին ուղղված համամիութենական պիոներական զեկույցը:

Պատանի թիմուրականները ամեն օր լինում են Սոֆյա տատիկի և Բարխուդար պապիկի տանը, օգնում նրանց: Չէ՞ որ իրենց երջանիկ մանկության համար են զոհվել նրանց երկու որդիները: Պիոներները մաքրել, հարթեցրել և կարգի են բերել նաև զոհվածների մայրեր Շուշան և Մայկոն տատիկների տուն տանող ճանապարհները: Թիմուրականները կազմակերպել են պապիկների երեկույթ: Պապիկներին պատմել են տիեզերական թռիչքների մասին, նրանց հետ աստղադիտակներով կատարել են երկնային մարմինների դիտարկումներ: Գյուղի աշխատավորների համար բեմադրել են «Գիքորը»:

Դրուժինայում սիրված ու մասսայական է սպորտը: Ամեն օր պիոներները կատարում են լիցքային վարժություններ, անցկացնում ԴԱԴ բազմամարտի գծով միջջոկատային մրցումներ: Պիոներների մեծագույն մասը ընդգրկված է սպորտային խմբակներում: Ինքնատիպ ու ռոմանտիկ են անցնում «Փայլակի» մրցումները, որին մասնակցում է նաև պիոներական հեծելազորը:

**Թևավոր խոսքեր**



## ԴԱՆԱՅԱՑԻՆԵՐԻ ԸՆԾԱՆԵՐԸ

*Դանայացիներ. սա հունական մի ցեղ է, որ այդպես է կոչել իրեն ի պատիվ առասպելական նախահայր Դանայոսի:*

*Հույներն իրենց պատմության արշալույսին պաշարում են փոքրասիական Տրոա կամ Իլիոն քաղաքը: Տասը տարի Տրոյան դիմադրում է թշնամուն: Խորամանկ Ոդիսևսը դանայացիներին խորհուրդ է տալիս խաբեությամբ գրավել ամրոցը: Սարքում են ներսը դատարկ մի հսկայածավալ ձի, որի մեջ տեղավորում են հույների ամենաընտիր ռազմիկներին: Իբրև ընծա ծովափին թողնելով այդ ձին, հունական զորքերը նստում են իրենց նավերն ու հեռանում ափից:*

*Տրոյայի բնակիչներից միայն Լաոկոոն քուրմն ու գուշակուհի Կասանդրան են կասկածում, որ դա խարդավանք է: Բայց որքան էլ խնդրում են քաղաքի պարիսպներից ներս չբերել ձին, նրանց չեն լսում և ձիու ներսում թաքնված հետախույզները թափանցում են Իլիոն: Գիշերը թաքուն նրանք դուրս են գալիս ձիու որովայնից, բաց են անում քաղաքի դարպասնե*

# ԱՆԿՈՐՈՒՍՏ ՀԱՎԱՔԵԼ ԽՈՏԸ

Չիթհանքովը Անիի շրջանի գյուղերից է, ավելի շուտ՝ ամենամեծ գյուղերից մեկը: Շրջկենտրոնից ընդամենը տասներկու կիլոմետր հեռավորության վրա է գտնվում, բայց մեքենայով գնալիս ճանապարհը երկար է թվում, որովհետև վերելքներով, վայրէջքներով և անհամար բլուրների միջով է անցնում:

Թվում է, թե այդ բլուրները վերջ չեն ունենալու: Ճանապարհը կտրվում, ասես ձորն է ընկնում: Իսկ ձորը՝ ձոր չէ, այլ լեռներով շրջապատված մեծ հարթավայրի սկիզբ: Լեռների ստորոտին՝ հարթավայրի եզրից էլ սկսվում է Չիթհանքով գյուղը: Նախապես ասենք, որ այստեղ ձեթի արտադրություն չկա: Բայց կա զրույց, որը ասում է, թե ինչ-որ ժամանակ գյուղի ունևորներն իրենց ունեցվածքի չափը ընդգծելու համար պարծեցել են, թե ուզենան արտերը կարող են ձեթով ջրել: Մի բան անառարկելի է, որ գյուղն այսօր շրջանի առաջավոր տնտեսություններից է: Հացահատիկի հնգամյա պլանը չիթհանքովցիները կատարել են երկու տարում: Եվ դրան նպաստել են նաև դպրոցականները, որոնք ամռան ամիսներին մասնակցում են կոլտնտեսության բոլոր աշխատանքներին:

Իններորդ դասարանցի Հրանուշ Մաղոյանը պատմում է, որ գարնանային աշխատանքները ըսկըսվելուն պես իրենք՝ Արմենուհի Պապոյանը, Համեստ Հունանյանը, Ռուզաննա Պետրոսյանը, Հովհաննեսը, Մարգարիտը, Ալեքսանն ու մյուսները, մասնակցեցին կաղամբի, եգիպտացորենի, կարտոֆիլի մշակմանը: Հետո նաև խոտհունձին:

Այստեղ Հրանուշը լռում է, վերցնում եղանն ու շարունակում խոտ կուտակել: Մյուս դպրոցականները արևից պաշտպանվելու համար տարագույն շորերով ծածկել են դեմքերը, հեշտ բան չպետք է կարծել բարկ արևի տակ խոտ հավաքելը: Զարմանալ կարելի է միայն, որ նրանց դեմքերին հոգնություն կամ ձանձրույթ չկա: Ավելին: Լարված ու անհանգիստ են աշխատում աղջիկները, տղաներին էլ կշտամբում են, որ ետ են մնում: Յուրաքանչյուր չորս դպրոցական օրվա ընթացքում հավաքում է 3 տոննա խոտ: Իհարկե, տատանումներ լինում են. Երբեմն դրանից ավել են հավաքում, երբեմն՝ պակաս: Եվ դա նույնպես հասկանալի է, որովհետև բոլոր տեղերում խոտը նույն խտությունը չունի:

Դրանով չի ավարտվելու նրանց աշխատանքը: Հետո կսկըսեն պահեստները մաքրել՝ նախապատրաստել բերքահավաքին: Այնուհետև ցորենի հունձը կսկըսվի...

Այստեղ հեկտարից երբեմն 50 ցենտներ ցորեն է ստացվում: Ցորենը հարկավոր է մշակել ու ժամանակին տեղավորել պահեստներում: Աշխատող ձեռքի պակաս է զգում գյուղը և այդ պակասը լրացնում են դպրոցականները:

Պիոներական կյանքի տնօրենն ու կազմակերպիչը դրուժինայի խորհուրդն է: Այն հաջողությամբ է իրականացնում պիոներական ինքնավարությունը, հասարակական հանձնարարությունների կատարման ստուգումը: Խորհրդի անդամները նիստի են ներկայանում կարմիր ծոցատետրերով, ուր գրառում են իրենց տրված հանձնարարությունները, նշումներ են կատարում: Նիստերի օրագրությունները արտացոլում են մանկական առողջ կոլեկտիվի կենսախինդ ու գրավիչ առօրյան:

Տարեգրությունը շարունակվում է: Պատմությունը հյուսվում է օր առ օր...

Այս և մյուս գործերի ու նախաձեռնությունների համար Լեռնաձորի 8-ամյա դպրոցի դրուժինան պարգևատրվեց ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով, իսկ նախագահը՝ Վահրամ Ավետիսյանը համամիութենական Արտեկ պիոներական ճամբարի ուղեգրով:

րը և ներս թողնում նավերով եւ վերադարձած ընկերներին:

Հոմեացի բանաստեղծ Վիրգիլիոսի «Էնեական», անմահ պոեմում Լաոկոոնը համաքաղաքացիներին հորդորում է զգույշ լինել, համառորեն, բայց ապարդյուն նա կրկնում է. «Ինչ էլ լինի, ես վախենում եմ դանայացիներից, նույնիսկ երբ նրանք ընծաներ են անում»:

Հնագույն ժամանակներից ի վեր այս խոսքն ամենուրեք հնչում է իբրև զգոնության, զգուշության կոչ, ընդդեմ շողոքորթության, կեղծ նվերների և ամեն տեսակի թշնամիքի:

Այստեղից էլ «Տրոյական ձի» արտահայտությունը, որ նշանակում է «գաղտնի, նենգ մտադրություն»:

## ՑԵՐԵԿԸ ՃՐԱԳՈՎ ՉԵՍ ԳՏՆԻ

Այս արտահայտության միտքը պարզ է առանց բացատրության: Սա ցույց է տալիս հազվագյուտ մի բան, որ ստիպված են փնտրել՝ ցերեկվա լույսին ավելացնելով արհեստական լույսը, կամ էլ հարկավոր առարկան կամ մարդուն գտնելու լիակատար անհնարինությունը:

Երբեմն այս ասացվածքը կապում են հույն փիլիսոփա Դիոգենեսին վերագրվող պատմությանը: Դիոգենեսը կամենում էր ցույց տալ, թե աշխարհիս երեսին որքան քիչ են «մարդ» կոչվելու արժանի մարդիկ, վառում է լապտերը և օրը ցերեկով մեն գալիս, նայում բոլոր անկյունները և այն հարցին, թե ինչ է անում, պատասխանում է. «Մարդ եմ փնտրում»:

Հավանաբար հույները նույնպես փնտրել են այս ասացվածքը, բայց մեկ մտ, անկասկած, դա ծագել է Դիոգենեսի պատմությունից անկախ:

## ՄՈԼՈՐՅԱԼ ՈՉԽԱՐ

Ավետարանում մի առակ կա, այլաբանական ուսմունքի մի պատմություն:

Մի մարդ ոչխարի հոտ ուներ: Ոչխարներից մեկը մոլորվում ու կորչում է: Տերը, որի համար թանկ էր հոտի ամեն մի կենդանին, թողնում է հոտը և գնում կորածին որոնելու, գտնում և ուսերին դրած տուն է բերում:

«Մոլորյալ ոչխար» արտահայտությունն այժմ նշանակում է լավ, բայց «ճշմարիտ ճանապարհից» պատահաբար շեղված մարդ:



## ԾՌՈՒՌ ԴԱՇՆԱՄՈՒՐ



Մեր դարում, երբ ըստեղծվում են տասնյակ նոր երաժշտական գործիքներ, առանձնապես էլեկտրոնային, դաշնամուրը դեռ պահպանվում է: Սակայն, ինչպես հաստատում են „ֆրանսիացի մասնագետները, դաշնամուրը ևս պետք է վերափոխվի: Նրանք պատրաստել են դաշնամուր, որի ստեղները ոչ թե ուղիղ գծով են դասավորված, այլ աղեղնաձև: Այդ դեպքում դաշնակահարը ավելի քիչ է աջ կամ ձախ թեքվում, որպեսզի ձեռքը հասցնի վերջին ստեղներին: Եվրոպայի որոշ երաժիշտ-կատարողներ բարձր են գնահատել այս նորամուծությունը: «Ծուռ դաշնամուր նըվագելը հարմար է և հաճելի»,— հայտարարել են նըրանք:

## ՔԱՂՑՐ ՍԱՐՔԵՐ



Էլեկտրոնային սարքեր պատրաստելիս անհրաժեշտ են ըլյաստմասսայե օժանդակ մասեր: Երբ աշխատանքը վերջանում է,

---



Պատմությունը չգիտի, թե երբվանից հանդես եկավ ընթերցողների այն տեսակը, որը մոռանում է վերցրած գիրքը ժամանակին վերադարձնել, կամ անփույթ է վերաբերվում գրքին, բայց ստույգ հայտնի է, որ հին Եգիպտոսում ով կորցնում էր փարավոնի գրադարանի պապիրուսե փաթեթներից, մահվան էր դատապարտվում, իսկ «գրքին» խնամքով չվերաբերվելու դեպքում ստանում էր ճիպոտի 200 հարված: Մեծ գրքասեր Ֆրիդրիխ Մեծը նման դեպքում, ճիշտ է, բավարարվում էր բանտարկությամբ, ընդ որում քըսան տարուց ոչ ավելի: Սեմյուել Ֆենկորտը՝ Լոնդոնի առաջին հասարակական գրադարանի հիմնադիրը, հավանաբար, առաջնորդվել է դրանով, որ 1752 թվին հասավ նրան, որ մտրակահարության և յոթնամյա բանտարկության դատապարտվի ընթերցողը գրքի թերթերի եզրերը ծալծլելու համար:

Իր գրքային ֆոնդը նման ընթերցողներից անվըտանգ դարձնելու համար, Օքսֆորդի համալսարանի Բոդլեյի անվան գրադարանը իր կանոնադրության մեջ հստակ կետ է ընդունում տուն գիրք բաց թողնել միայն թագավորող միապետին, ընդ որում հետևում

փորձում են այդ մասերը հեռացնել, որը, սակայն, շատ դեպքերում անհնար է լինում: Օժանդակ մասերը մշտապես մնում են սարքերի մեջ՝ ծանրություն պատճառելով և փառացնելով օդափոխանակությունը: Վերջերս Մյունխենի (ԳՖՀ) էլեկտրոնային ֆիրմաներից մեկը սկսել է օժանդակ մասեր պատրաստել մածված շաքարից: Երբ սարքը լվանում են տաք ջրով, շաքարը լուծվում է և դուրս հոսում ջրի հետ: Բացի այդ, տաք ջրի մեջ խառնում են պանապան նյութեր, որոնք մասերը մաքրում են ոչ միայն շաքարից, այլև յուղաբծերից ու տարբեր կեղտերից:

## ՀՐԾԵՇ ՌՈՒԲՈՏ



Ճապոնական Յոկոհամա քաղաքում կա մի արտասովոր հրշեջ, որը որպես կանոն, հայտնվում է այնտեղ, որտեղ մարդու համար վտանգավոր է, կամ էլ այնտեղ, որտեղ սովորական հրշեջը, նույնիսկ հրադիմացկուն զգեստները հագած, արտակարգ ջերմության պատճառով՝ չի կարող մոտենալ կրակի օջախին: Այս անվախ ու անխոցելի հրշեջ ռոբոտը բավականին բարդ ագրեգատ է և հեռվից ղեկավարվում է հատուկ սարքերի միջոցով: Ի միջի այլոց, սարքերից մեկը ամրացված է ռոբոտի վրա, որը հրշեջ խմբին տեղեկություններ է հաղորդում հրդեհի շրջանում ջերմության փոփոխությունների մասին:

## ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ ԻՆՉՈ՞Ւ, ԵՐԲ՞, ՈՐՏԵ՞Ղ

ԻՆՉՈՒ

## ՇՆԱՁԿՆԵՐԸ ԵՎ ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ

Ավստրալիացի գիտնական, պրոֆեսոր Կլիֆտոն Մակդոնալդը վերջերս Նոր Գվինեայի ափերի մոտ փորձեր կատարեց շնաձկների վրա: Նա ծովի մեջ սուզեց հզոր ռադիոհաղորդիչներ, որպեսզի ստուգի, թե ինչպես են շնաձկները արձագանքում տարբեր ձայների. որո՞նք են նրանց գրավում կամ վանում: Մակդոնալդը շուտով պարզեց, որ բիթլ երաժշտությունը շնաձկներին խուճապահար փախուստի է մատնում, մինչդեռ Բախի ու Բրամսի երաժշտությունը նրանց հաճույք է պատճառում: Պրոֆեսոր Մակդոնալդը ասում է. «Այժմ ես հիմք ունեմ ասելու, որ շնաձկները կիրթ են»:




## ՀԱՆՑԱՆՔ ԵՎ ՊԱՏԻԺ

*էին դրան անշեղորեն: Պատահեց, որ Չարլզ I թագավորը իր սպասավորին ուղարկեց գիրք բերելու, վերջինս վերադարձավ դատարկաձեռն և թագավորն ըն-*



*տիպված եղավ անձամբ գնալ անփիջում գրադարանավարի մոտ:*

*Սակայն, չնայած ամենայն խստությանը, գիրք ուշացնող ընթերցողների պակաս երբեք չի կգացվել: Օրինակ, 1975 թ. Շեֆիլդ քաղաքի հանրային գրադարանին վերադարձվեց «Սովորիր հյուսել և ասեղնագործել» գիրքը, որը մոռացկոտ ընթերցողուհին իր մոտ պահել էր 43 տարի: Ի դեպ դա չպետք է համարել չափազանց: 1969 թ. հունիսին Անգլիայի Նորիջյան մայր տաճարի գրադարանը Լոնդոնի կենտրոնական գրադարանին վերադարձրեց մի գիրք, որը լույս էր տեսել 1650 թվին, վերցված էր միջգրադարանային աբոնեմենտով... մոտավորապես 1732—1819 թվերին: Երկու հարյուր տարի ուշացման տուգանքը 200 ֆունտ էր կազմում՝ մեկ պենս ամեն շաբաթվա համար, բայց եկեղեցական հայրերի նկատմամբ եղած հարգանքից ելնելով՝ բավարարվեցին բերանացի նախատելով:*

*Եվ, այնուամենայնիվ, մոռացկոտության ռեկորդ սահմանվեց Քեմբրիջի Սիդնի Սասեկս կոլեջի գրադարանում, որտեղ գնդապետ Ռոբերտ Ուոլպոուլի վերցրած գիրքը գրադարան վերադարձավ 300 տարի անց:*



## ՆՈՐ ԹՌՉՈՒՆ



Արդեն տասը տարի է, ինչ աշխարհում թռչունի նոր տեսակ չի հայտնաբերվել: Եվ ահա Հավայան համալսարանի ուսանողների արշավախմբի բախտը բերեց. Մաուի կղզու արևադարձային անտառներում ուսանողները գտան գիտությանը մինչև այժմ անհայտ մի փոքրիկ թռչուն: Թռչունը նման է անգլիական ճնճղուկի. մեջքը ձիթադարչնագույն է, կուրծքը՝ վառ դեղին, իսկ աչքերի ու կտուցի շուրջը կան նեղ սև շերտեր: Վերջին հիսուն տարում սա Հավայան արշիպելագում նոր թռչունի երկրորդ հայտնագործությունն է:

## ԳԵՂՄ, ԻՐՈՔ, ԵՂԵԼ Է

Ձեզնից ո՞վ չգիտե կախարդական ոսկե գեղմի մասին հին հունական հեքիաթը, որը ձեռք բերելու համար «Արգո» նավով հիսուն հերոսներ ուղևորվեցին Կոլխիդա: Պարզվում է, որ այս առասպելը, այլ առասպելների նման, ճշմարտության հատիկներ ունի: Շոտլանդական գիտնականների մի խումբ հաստատում է, որ արգոնավորդները գնացել են ոչ թե առասպելական, այլ հավվագյուտ տեսակի գեղմի ետևից: Հին հույները գեղմը այլաբանորեն են ոսկե անվանել, քանի որ այն կարող էր ոսկուց թանկ գնահատվել:

Այսպիսի եզրակացության գիտնականները հանգեցին, երբ ուսումնասիրեցին մ. թ. ա. 6-րդ դարում կառուցված, Սև ծովի ափին գտնվող դամբարանից հայտնաբերված բրդե կցեստի կտորտանքը: Գործվածքը արտակարգ բարձր որակ ուներ: Միկրոսկոպով ուսումնասիրելիս, պարզորոշ երևում էին 16 միկրոն հաստությամբ շատ նուրբ ու բարակ թելեր. հավանաբար, դա եղել է եզակի տեսակի ոչխարի բուրդ:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



## «ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ԵՐԿԻՐ»

### Լավագույն պատմվածքի մրցույթ

«Պիոներիայի երկիր» համամիութենական մրցույթն անցկացվում է մանկական գրականության մեջ պիոներական թեմատիկան ուժեղացնելու, պիոներական ջոկատավարների վառ կերպարներ ստեղծելու, պիոներական կազմակերպություններում երեխաների կյանքը պատկերելու նպատակով:

Մրցույթի պատմվածքները պետք է խորությամբ ու բազմակողմանիորեն արտացոլեն Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության կյանքն ու գործունեությունը, կուսակցության հոգատար վերաբերմունքը, աճող սերունդներին դաստիարակելու ժողովուրդների բարեկամության, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, անվերապահ նվիրումը կոմունիստական կուսակցության գործին:

Մրցույթի նյութերը ընդունում է «Պիոներսկայա պրավդա» թերթի խմբագրությունը: Պատմվածքները պետք է լինեն մեքենագրված, 7 էջից ոչ ավելի: Չմեքենագրված գործերը մրցույթի ժյուրիի կողմից չեն նայվում և չեն վերադարձվում: Մրցույթի նյութերի ընդունման վերջին ժամկետն է 1976 թ. սեպտեմբերի մեկը:

Մրցույթի հաղթողների համար սահմանված են հետևյալ մրցանակները.

մեկ առաջին — 300 ռուբ.,
մեկ երկրորդ — 200 ռուբ.,
մեկ երրորդ — 100 ռուբ.,
ութ խրախուսական — 50 ռուբ.:

Մրցանակ շահած և աչքի ընկած գործերի հեղինակները կպարգևատրվեն նաև ՀամԼԿԵՄ Կենտկոմի, Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության Կենտրոնական խորհրդի դիպլոմներով և «Պիոներսկայա պրավդա» թերթի պատվոգրերով:

Մրցույթի արդյունքները կհրապարակվեն 1976 թվականի հոկտեմբերին «Պիոներսկայա պրավդա» թերթում:

# ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹ 75-Ը

## ԱՎԱՐՏՎԱԾ Է

Խմբագրությունն ամփոփեց «Ուշադիր ընթերցողների մրցույթ-75»-ի արդյունքները: Երկու փուլի հարցերին շատերն էին ճիշտ պատասխանել: Սակայն մրցանակները շնորհվեցին այն աշակերտներին, ովքեր առավել հանգամանորեն ու խնամքով էին պատասխանել առաջադրված հարցերին:

Առաջին մրցանակի արժանացան Կարինե Յուզբաշյանը (Կիրովական, № 1 դպրոց, 6-րդ դաս.) և Հրաչիկ Խաչատրյանը (Ապարանի շրջ., գ. Ափնա, 8-րդ դաս.):

Երկրորդ մրցանակ շնորհվեց Միրզաջան Գրիգորյանին (Սևանի շրջ., գ. Գեղամավան, 8-րդ դաս.), Սոնիկ Սաֆյանին (Վրաց. ՍՍՀ, Բոգդանովկայի շրջան, գ. Կարծախ, 8-րդ դաս.):

Երրորդ մրցանակ շնորհվեց Նելլի Թումանյանին (Կիրովական, № 5 դպրոց, 9-րդ դաս.), Նորայր Ոսկանյանին (Ադր. ՍՍՀ, Ստեփանակերտի շրջ., գ. Այնեկ, 8-րդ դաս.) և Մանուշակ Մաթևոսյանին (Դիլիջան, № 4 դպրոց, 10-րդ դաս.):

Մրցույթի երկու փուլերի արդյունքներով խրախուսական մրցանակի արժանացան Ալիսա Սահրադյանը (Եղեգնաձորի շրջ., № 3 դպրոց, 10-րդ դաս.), Էդիկ Մամյանը (Նոյեմբերյան, № 2 դպրոց, 9-րդ դաս.), Լիլյա Հոխյանը (Վրաց. ՍՍՀ, Ախալքալաքի շրջան, գ. Օրջա, 8-րդ դաս.), Սիլվա Մելիքյանը (Լենինական, №9 դպրոց, 8-րդ դաս.) և Մարգարիտ Մնեյանը (Կամոյի շրջ., գ. Լանջաղբյուր, 9-րդ դաս.):

### ՈՐԲ ԹՌՉՆԱԿԸ

ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Մի որբ թռչնակ, թևը կոտրած,
Մի օր տեսա ճամփում ընկած.
Զգուշությամբ վերցրեցի,
Մոցս դրած տուն բերեցի,
Դարմանեցի, առողջացավ,
Բաց թողեցի, թռա՜վ, գնա՜ց,
Այս փետուրն ինձ պարգև մնաց:




Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 7 հուլիս 1976 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍԻՐԱՍՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 06690: Պատվեր 1067: Տպաքանակ՝ 74900: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 29/VI 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդոյանցի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9. Տերյան փ. № 91:

# ԽԱՐՈՒՅԿ

ՎԱՆԻԿ ՍԻՐԱԴԵՂՅԱՆ

Երկինքն այս գիշեր փոքր է թվում,
Փոքր է թվում անտառի բացատը,
Եվ աստղերը կկոցում են աչքերը
Խարույկի պայծառ կրակից։

Գիշերում սրսփող ծառերը
Ճյուղերով կրակին են ձգվում,
Եվ բացատը սեղմվում է կրակին։

Խարույկը պար է բռնում
Կարմրամորթ ցեղապետի դստեր նման,
Կրակի լեզուները
Պարուրում են երեխաների պարանոցները
Եվ կարմիր փողկապներ դառնում։

Երեխաները սեղմվում են կրակի շուրջը,
Անտառը սեղմվում է բացատի շուրջը,
Երկինքը իջնում է բացատին,
Եվ աստղերը
Թիթեռների նման ընկնում են
Մարմրող խարույկի մեջ։

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ